տարած են Շէմմար Արաբները եւ Քիւրտերը, սպաննելով բոլոր այրերը: Շատ քիչ է սպաննուած կիներուն եւ մանուկներուն թիւը:

Համաձայն վերջին լուրերու, հիւսիսային Իրաքի քրիստոնեայ ժողովուրդը վերադառած է իր հանդարտութիւնը, իսկ դէպքին վայրը ղրկուած զինուորները քաշուած են:

**Պ. ԷՌԻՕ ՄՈՍԿՈՒԱՅԻ ՄԷՋ**

Նախկին վարչապետը Մոսկուա հասաւ ուրբաթ օր, եւ կայարանին մէջ ընդունուեցաւ Պ. Պ. Լիթվինովի, Գարախանի եւ ուրիշ գործավարներու կողմէ: Հեռագիրը կ'ըսէ թէ ժողովուրդը ջերմ ընդունելութիւն ըրաւ:



**ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ**

Սգակիր ընտանիք Տէօլէնեան, անհուն վշտով իրենց սրտագին շնորհակալութիւնները կը յայտնեն ամէն անոնց որոնք անձամբ, գրաւոր եւ ծաղկեպսակով իրենց ցաւակցութիւնները յայտնեցին իրենց սիրելի մօր՝
Այրի Տիկ. ԲԵՐՐՈՆԷ ՏԷՕԼԷՆԵԱՆի
դառնակսկիծ մահուան առթիւ:


Le Gérant : H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme :-: PARIS (13e)

Պ. Էռիօ մեկնեցաւ երէկ, շաբաթ, եւ Փարիզ պիտի վերադառնայ Ռիկայի ճամբով:

⁂ Պատասխանելով խորհրդային իշխանութեան հրաւէրին, Ֆրանսայի օդանաւային նախարարը Մոսկուա պիտի երթայ երեքշաբթի օր: Ճամբորդութիւնը պիտի կատարուի օդանաւով: Բուն նախարարական օդանաւին պիտի ուղեկցին ուրիշ երկու օդանաւեր, իսկ ծանօթ օդանաւորդներ Քոստ եւ Ռօսի պիտի թռին իրենց օդանաւով: Չորս օդանաւերը Մոսկուա պիտի հասնին սեպտեմբեր 15ին, Քիէվ եւ Խարքով հանդիպելէ յետոյ:

## Հրէական խորհրդաժողովին որոշումները

Հրէական խորհրդաժողովը վերջացաւ ուրբաթ օր, Ժընեւի մէջ, քուէարկելով երկու կարեւոր բանաձեւեր:

Երկրորդ բանաձեւը կը վերաբերի Գերմանիոյ հակահրէական պայքարին եւ այս առթիւ կը յանձնարարէ ընդհանուր պոյքոթ, իբրեւ ինքնապաշտպանութեան միջոց: « Հրեայ ժողովուրդը չի կրնար ո՛ր եւ է յարաբերութիւն մշակել ազգային – ընկերվարական կառավարութեան հետ, եւ իրաւունք ունի պաշտպանելու որ միլիոնաւոր ոչ – հրեաներ ուժ տան իրեն, այս պայքարին մէջ: Ոչ թէ հրեայ ժողովուրդէն, այլ գերմանական կառավարութենէն կախում ունի որոշել թէ երբ վերջ պիտի գտնէ հրէական պոյքոթը »:

Խորհրդաժողովը անհրաժեշտ գտնելով փութացնել հրէական տիեզերական ժողովին գումարումը, յանձնարարուած է գործադիր մարմնին՝ գումարումը կազմակերպել 1934 մարտին: Ընտրութիւնները պէտք է տեղի ունենան ամէնէն ուշը 1934 յունուարի վերջը,

⁂ Լայփցիկի մէջ յանկարծամահ եղաւ Գերմանիոյ հակահրէական շարժման գլխաւոր գործիչը, Ֆրիչ: Հանգուցեալը հակահրէական թերթ մը հիմնած էր դեռ 1902ին եւ ունի բազմաթիւ հեղինակութիւններ, բոլորն ալ թունդ հակահրէական: Պ. Ֆրիչ մէկն է հիթլէրական հակահրէականութեան հոգեւոր հայրերէն եւ ուրիշ ո եւ է մէկէն աւելի նպաստած է հակահրէական ատելութիւն ներշնչելու ամբոխին:

## Աւստրիոյ ընկերվարականները Գերմանիոյ դէմ

Աւստրիոյ ընկերվարական կուսակցութիւնը կոչ մը ուղղելով բանուորներուն, հրաւիրեց պոյքոթ հռչակել գերմանական արտադրութեանց դէմ, համաձայն Փարիզի ընկերվարական խորհրդաժողովին որոշման: (Այս պոյքոթը յանձնարարուած է բոլոր ընկերվարական կուսակցութեանց):

« Մենք Աւստրիացիներս, կ՚ըսէ կոչը, պատճառ մը աւելի ունինք մասնակցելու համար միջազգային պոյքոթին, որովհետեւ հիթլէրական Գերմանիան խափանած է զբօսաշրջիկներու երթեւեկը, ապրուստէ զրկելով հազարաւոր բանուորներ: Ցետոյ, աւստրիական ապրանքները գաղտնի պոյքոթի ենթարկուած են հիթլէրական Գերմանիոյ մէջ: Մենք պոյքոթին պիտի պատասխանենք պոյքոթով: Աւստրիացի բանուորներ, ուրիշ ազատ ժողովուրդներու ապրանքները գնեցէք: »

⁂ Իշխան Սթարէնպէրկ, Աւստրիոյ հայրենասէրներուն կուսքը, Իտալիայէն վերադառնալով, յայտարարեց թէ միայն Փաշական վարչաձեւը կրնայ փրկել Աւստրիան:

---

### Դ ա շ տ ա հ ա ն դ է ս

ՓԱՐԻԶԻ ԵՕԶԿԱՏԻ ԵՒ ԻՐ ՇՐՋԱՆՆԵՐՈՒ ՀԱՅՐԵՆԱԿՑ. ՄԻՈՒԹԵԱՆ
ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ ՏԵՂԻ Կ՚ՈՒՆԵՆԱՅ
ԱՅՍՕՐ ԿԻՐԱԿԻ ԱՌԱՒՕՏԷՆ ՄԻՆՉԵՒ ԵՐԵԿՈՅ ՄԷՕՏՈՆԻ ԱՆՏԱՌԻՆ ՄԷՋ

երգ, պար, արտասանութիւն,
կը նուագէ ԵՓՐԱՏ նուագախումբը,
ճոխ պիւֆէ՝ դիւրամատչելի գիներով,

Հաղորդկց. միջոց.— փորթ վէրսայլէն առնել 23 եւ 32 թիւ ճանրակառքերը եւ իջնել ֆէրմ տը Մուլինօ, Invalidesէն շոգեկառք եւ իջնել Gare Meudon,

---

### Դ ա շ տ ա հ ա ն դ է ս

ՇԱՎԻԼԻ ԴԱՒՐԱՅԻ ՀԱՅՐԵՆԱԿՑԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ
ԱՅՍՕՐ ԿԻՐԱԿԻ ԱՌԱՒՕՏԷՆ ՄԻՆՉԵՒ ԻՐԻԿՈՒՆ
ՄԷՕՏՕՆԻ ԱՆՏԱՌԻՆ ՄԷՋ, «ՊԱՂ ԱՂԲԻՒՐ»ԻՆ ՄՕՏ

---

### Դպրոցասէր Տիկնանց Վարժարան

**1, Boulevard du Nord, Le Raincy (S.-O.)**

Վարժարանը կը վերաբացուի յառաջիկայ Հոկտեմբեր 1ին:

Զբիավարժ աշակերտներուն թիւը լրացած է. կ՚ընդունուին միայն թոշակաւոր աշակերտուհիներ շատ դիւրամատչելի պայմաններով:

Վարժարանը կ՚ապահովէ իր աշակերտուհիներուն հայեցի առողջ դաստիարակութիւն: Խնամով կ՚աւանդուին ուսման բոլոր ճիւղերը, Ֆրանսացի եւ հայ մասնագէտ ուսուցիչներու կողմէ: Հոգ կը տարուի հայերէն եւ ֆրանսերէն լեզուներու:

Մասնաւոր ուշադրութիւն կ՚ընծայուի ձեռարուեստի եւ ձեռագործի ճիւղերուն:

Ֆիզիքական դաստիարակութեան հոգը եւ մարզանքի դասերը յանձնուած են Mlle LAHITTEի, որ Seineի նահանգին նախակրթարաններուն նոյն ճիւղի ուսուցչուհին է:

Արձանագրութիւնները կը կատարուին Երկուշաբթի, Չորեքշաբթի եւ Կիրակի կէս օրերէ յետոյ:

---

### Ե Փ Ր Ա Տ նուագախումբ

Եթէ կ՚ուզէք ձեր հանդէսները հաճելի դարձնել, դիմեցէք «ԵՓՐԱՏ» նուագախումբին որ կը նուագէ ճայկական, եւրոպական, կովկասեան եւ արեւելեան եղանակներ, մասնաւորապէս թանկօ Արժանթին:

Խաչաձեւումի տեղի չտալու համար, ձեր կազմակերպած հանդէսի թուականէն 15 օր առաջ դիմել՝ անձամբ կամ գրաւոր, ԵՓՐԱՏ նուագախումբի ղեկավար՝ Տ. ՕՆՈՍԵԱՆի, 15, rue du Pourtour, Clamart, Seine.

---

### Բ Ո Ւ Ր Դ Ե Ր

կը ծախենք ամէն տեսակ բուրդեր՝ Թրիքօ շինողներու ճամար,
Միշտ պատրաստ ունինք 50.000 քիլօ ամէն տեսակի գոյներով
բուրդեր՝ Թիւ 2)28, 3)28, 2)32, 2)36, 2)40 (grosse laine):

Դիմել՝ **DOERFLINGER,**

**31, rue de Maubeuge, Paris (9) Métro: Cadet**

Մասնաւոր բուրդ լոգանքի ճագուստնեկու ճամար: Շրջուն վաճառորդներու ճամար բուրդէ կծիկներ: Գաւառէն եկած ապսպրանքները կը ղրկուին ապսպրանքներու ստացման օրը,

---

**ՎԱՐՁՈՒ Է** մեկնումի պատճառաւ յարկաբաժին մը 3 սենեակ, 1 խոհանոց, ջուր, կազ, ելեկտրականութիւն: Ամսական վարձք՝ 250 ֆրանք: Մանրամասնութեանց համար դիմել՝ Mme A. Derderianի, 192, rue de Tolbiac, Paris (13),

---

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր և Տիկ. Լեւոն Պապօնեան, Օրիորդներ Ալիս եւ Մայտա Պապօնեան շնորհակալութիւն կը յայտնեն ամէն անոնց որոնք անձամբ, գրաւոր եւ ծաղկեպսակով ցաւակցութիւն յայտնեցին իրենց սիրելի որդւոյն եւ եղբօր՝ վաղամեռիկ ՎԱՀԱԳՆ ՊԱՊՕՆԵԱՆի դառնակսկիծ մահուան առթիւ:

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Պ. Պ. Աղապապ Պարսամեան եւ Հրաչ Հանտալեան ցաւակցութիւն կը յայտնեն Տէր եւ Տիկին Լեւոն Պապօնեանի իրենց սիրելի որդւոյն դառնաղէտ մահուան առթիւ:

Պիյեանքուռ, 9 Սեպտ. 1933

---

**Le Gérant : H. STEPHAN**
**Imprimerie A. DER (AGOPIAN)**
**17, Rue Damesme :-: PARIS (13e)**

## «ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐ»Ը ԿԸ ՏՕՆՈՒԻ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

30 ՍԵՊՏԵՄԲԵՐ ՇԱԲԱԹ ԵՐԵԿՈՅ ԺԱՄԸ 8.30ԷՆ ՄԻՆՉԵՒ ԱՌԱՒՕՏ

**Ingénieurs CIVILS**ի ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

**19, rue Blanche Métro: Blanche et Trinité**

*Կը Նախագահէ ընկեր՝* ԳԵՐԱՍԻՄ ԲԱԼԱՅԵԱՆ

*Գեղարուեստական բաժնին կը մասնակցին՝ ՍԻՓԱՆ երգչախումբը, Թառխա ժօրժ, Ա. Քէչէճեան եւ ծանօթ արուեստագէտներ:*

Հայկական եւ եւրոպական պարեր կէս գիշերէն վերջ

*կը նուագէ* **Pigalle**ի *լաւագոյն ճազերէն մէկը, մասնակցութեամբ՝ ԹԱՌԻՍ ԺՕՐԺի:*

ՃՈԽ ԵՒ ԱԺԱՆ ՊԻՒՖԷ — ՄՈՒՏՔ 7.50 ՖՐԱՆՔ

## Պ Ա Ր Ա Հ Ա Ն Դ Է Ս

*ՍԻՓԱՆ* երգչախումբի պարահանդէսը *ՀՈԿՏԵՄԲԵՐ* 14ին, *ՇԱԲԱԹ* իրիկուն:կը խնդրուի նկատի առնել այդ թուականը:

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՕՐ

7 ՀՈԿՏ- ՇԱԲԱԹ ԻՐԻԿՈՒՆ ԺԱՄԸ 8.30ԻՆ **Salle GAVEAU**ի ՄԷՋ

**45, Rue la Boëtie Métro: Miromesnil**

Կազմակերպուած Փարիզի եւ շրջաններու Հայ Մշակութային Միութիւններու եւ հաստատութիւններու կողմէ: Նախաձեռնութիւն՝ « ՀԱՅ ԳՐԱԿԱՆ ԱԿՈՒՄԲ »ի:

*Կը նախագահէ՝* Պ. ՌՈՒԲԷՆ ԲԵՐԲԵՐԵԱՆ

Աննախընթաց երեկոյթ նուիրուած ամբողջութեամբ Հայ երաժշտութեան: Պիտի նուագուին հին եւ նոր հեղինակներու երկերը մեծ մասամբ առաջին անգամ:

երգչուհիներ.— *Օր. ՄԱՐԳԱՐԻՏ ԲԱԲԱՅԵԱՆ* եւ *Օր. Ի. ՊԻՒԼՊԻՒԼԵԱՆ*
ջութակահար.— *Պ. Ժ. ԱՂԱՋԱՐԵԱՆ:*
դաշնակահար.— *Պ. Ս. ՍԱՐԳԻՍԵԱՆ:*
երգչախումբեր՝ «*Կոմիտաս*» ղեկավարութեամբ *Պ. Ն. ՍԵՐԳՈՅԵԱՆի:*
» » «*Կիլիկիա* » » *Պ. Գ. ԱԼԷՄՇԱՀի:*

Սէնֆոնիկ մեծ նուագախումբ, բաղկացած *40* արուեստագէտներէ, ղեկավարութեամբ՝ *Պ. Պ. Գ. ԱԼԷՄՇԱՀի* եւ *Ա. ՊԱՐԹԵՒԵԱՆի:*

*ՏՈՄՍԵՐԸ ԿԸ ԾԱԽՈՒԻՆ.—* «Հայ Մշակոյթի Օր»ուան յանձնախումբի քարտուղարութեան Պ. Հ. Բալուեանի մօտ, *1, Rue l'Aqueduc, Paris (10). Tél. Nord 75-69: Salle Gaveau. 45, rue la Boëtie* ամէն օր ժամը *9-12* եւ *2-6*: Գրատուն Հ. Սամուէլ, *51, rue Mr. le Prince*: ճաշարան Ֆլօրիա, *61, rue Mr. le Prince*: Հանդէսին օրը կիշէն:

բոլոր տոմսերը թուագրուած են: գիները 5-20 ֆրանք:

կը խնդրուի կանխաւ ապահովել տեղերը:

*Հաղորդ. միջոցներ.—* մէթրօ *Miromesnil*: Օթօպիւս *AT, ATbis, AO, AH, B, BE, CD, CE, CC*: Հանդէսը պիտի վերջանայ գիշերուան ճիշդ *11.30*ին:



*18րդ* ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ — ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

ՎԵՐԱԲԱՑՈՒՄ 1933 – 34 ԹԱՏԵՐԱՇՐՋԱՆԻ

## ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԹԱՏՐՈՆ

Հիմնադիր - Ղեկավար՝ Ա. ԿՈԹԻԿԵԱՆ

1 *ՀՈԿՏԵՄԲԵՐ ԿԻՐԱԿԻ ՑԵՐԵԿ ԺԱՄԸ 3ին*

Ե Ւ

1 *ՀՈԿՏԵՄԲԵՐ ԿԻՐԱԿԻ ԳԻՇԵՐ ԺԱՄԸ 9ին*

կը ներկայացուի

*ՑԵՐԵԿՈՅԹ — ԵՐԵԿՈՅԹ*

Studio Rudolf*ի սրահին մէջ* 6bis Rue Campagne Première (Métro: Raspail)

## ՊԱՂՏԱՍԱՐ ԱՂԲԱՐ

*Թրիխ, որ անցեալ օր Փարիզ կը գտնուէր եւ Ամերիկա մեկնեցաւ: Այս արուեստագիտուհին նախապէս կրեց Սթէրնպէրկի շունչը: Այս տաղանդաւոր արուեստագէտն էր, որ Մարլէնի կալը թրծեց եւ ստեղծեց զգաւէչ կին մը, մերժուած սէրերու տառապանքէն, անցեալ օրերու կարօտէն այրած աչքերով, նուաղկոտ նայուածքով, զառն քաղցրութեամբ մը օծուն:*

*Նոյն կաւը կը թրծէ այս անգամ հայ արուեստագէտ մը, Մամուլեան: Քննադատները բոլորն ալ կը գնահատեն որ Մամուլեան ստեղծած է նոր Մարլէն մը, աւելի ուժեղ, աւելի խորունկ: Հոգեբանական քանդակագործութիւն մըն է ամբողջ գործը, որուն ոչ կշռոյթը, ոչ ալ հիւսուածքի գաղտնիքը կարելի է տալ պատմելով: Պէտք է դիտել Մարլէնը կենդանի պաստառին վրայ, — որքան մարդկային է եւ յուզիչ, երբ կը խայտայ առանց երբեք կարենալու ծածկել իր տխրութիւնը, իր խորունկ տխրութիւնը: Ու ժ պէտք է ձուլելու համար տխրութիւնը հրճուանքին հետ, յուսահատութիւնը հաճոյքին հետ, խռովահար եւ սիրող սիրտը խաղաղ եւ անտարբեր հոգիին հետ:*




**Le Gérant : H. STEPHAN**
**Imprimerie A. DER (AGOPIAN)**
**17, Rue Damesme :-: PARIS (13e)**


*ԱՌՆՈՒՎԻԼ-ԼԸ-ԿՈՆԷՍԻ Վարագայ Ս. Խաչ Եկեղեցւոյ Հոգաբարձութիւնս կը ծանուցանէ Փարիզի եւ շրջականերու բարեպաշտ հայ հասարակութեան թէ 1 Հոկտեմբեր Կիրակի, Եկեղեցւոյս անուանակոչութեան տօնակատարութիւնն է եւ Տ. Վռամշապուհ եպիսկոպոս հանդերձեալ է Ս. պատարագ մատուցանելու: Այս առթիւ տեղի պիտի ունենայ Կաթողիկոսի անդրանիկ օրհնութեան Կոնդակի ընթերցումը եւ Տօնին առթիւ մատաղ պիտի բաշխուի:*

ԿՆԻՔ

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

*ԿԼՅՎԼԻ եւ ՇՐՋԱՆԻ Հայրենակց. Միութեանս ընդհ. ժողովը վաղը Կիրակի կէս օրէ վերջ ժամը 2.30ին,* 22, rue Madame Curie, *Պանեէօ Օրակարգ.— Նոր Վարչութեան ընտրութիւն եւ Ընթացիկ հարցեր: Կը հրաւիրուին անդամ եւ ոչ-անդամ բոլոր հայրենակիցները: Ներկաներու թիւը մեծամասնութիւն պիտի համարուի:*



ՏԻԿԻՆ ՍՈՒՐԱԲԵԱՆ

## ՓԱՐԻԶԱՀԱՅ ՕՓԵՐԷԹԻ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԻՒՆ

Ա. ՏԱՐԻ — Ա. ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

*ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ԲԱՑՈՒՄ* 1933 - 934 *ԹԱՏԵՐԱՇՐՋԱՆԻ*

*ՍՕՍԻԷԹԷ ՍԱՎԱՆԹԻ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ*

9 Rue Danton, Paris - Métro St. Micel *եւ* Odéon

*ԱՅՍՕՐ ԿԻՐԱԿԻ ՑԵՐԵԿ, ԺԱՄԸ 2.45ին*

ՏԻԿԻՆ Մ. ՍՈՒՐԱԲԵԱՆ

Ամերիկա մեկնելէ առաջ վերջին անգամ ըլլալով

կ'երեւի փարիզահայ բեմին վրայ

*կը ներկայացուի* ***Մէկ Բաւկ - Ձուս Պաւկ***

*(Զուարթ Օփէրէթը երեք արար)*

*Հեղ.՝ Վ. Փափազեան*(Լիլյա), *Երաժշ.՝ Ժ. Շահ-Պարոնեան,*

*Ծաղ.՝ Գրիգոր - Վահան*

կը մասնակցին փարիզահայ բեմի ամէնէն սիրուած դերասաններն ու դերասանուհիները:

*Գիները.— Ա. կարգ 25, Բ. կարգ 15, Գ. կարգ 10, Դ. կարգ 7 ֆր.*

# ԷՆԿԻՒՐԻ - ԱԹԷՆՔ - ՍՕՖԻԱ

Սեպտեմբերի երկրորդ տասնօրեակին, երկու կարեւոր դէպքեր տեղի ունեցան։

Անոնց առաջինը Ցալտարիսի այցելութիւնն է՝ Էնկիւրի։ Երկրորդը՝ Ըսմէթ փաշայի ժամանումը Սօֆիա։

Կ'արժէ զբաղիլ այս երկու այցելութիւններով։ Զբաղիլ՝ ոչ թէ անոր համար որ պետական մարդիկ դրացի մայրաքաղաք մը այցելած են, այլ անոր համար որ մանաւորապէս Ցալտարիսի Էնկիւրի այցը բացառիկ հանգամանք ստացաւ։

Եւ այս՝ քանի մը պատճառներով։

Ինչպէս ծանօթ է, Թուրքիոյ հետ սերտ բարեկամութեան տեսակէտը առաջին անգամ մէջտեղ դրաւ Վենիզելոս։ Առաջնորդուած՝ բացառապէս իր երկրի շահերէն, պայմաններէն ու պահանջներէն, Կրետացին իրատես քաղաքականութիւն մը որդեգրեց տարօրէն յանդգնութեամբ մը հրապարակ դնելով զայն։ Ցալտարիս այն ատեն ընդդիմադիր էր։ Արքայական։

…

տոյթին մէջ։ Այսինքն, մինչ տասը տարիէ ի վեր անընդհատ կը ճառէր ու կը խօսէր «խաղաղութիւն ամէն տեղ ու ամէնքին հետ» նշանաբանէն, Թուրքեւհելլէն զինակցութեամբ զինական յարձակման մը դէմ զինական գործակցութեան մը ուխտը կը դնէ մէջտեղ, ձխտելով, այսպէս, «խաղաղութիւնը» ոչ միայն «ամէն տեղ», այլ մանաւանդ իր ու Յունաստանի սահմաններուն վրայ, ու, ժխտելով միանգամայն, «խաղաղութիւնը ամէնքին հետ»ը, քանի որ իրենց զինական գործակցութիւնը ուղղուած պէտք է ըլլայ որ եւ է երրորդի մը կամ ուրիշին դէմ։

Բայց, ըսինք, արդէն, թէ իր քաղաքականութեան արտաքին երեւոյթն է որ փոփոխութիւն կը կրէ, քանի որ Թուրքիա երբեք զաղրած չէ զինուելէ, պատրաստուելէ եւ յարձակումներու մտահոգութիւնը ունենալէ։ Իսկ այդ փոփոխման նշանակութիւնը պէտք է փնտռել զայն ցոյց տալու

…

կայ Պուլկարիան։

Ուրեմն, պարզ հետեւողութեամբ, Թուրքիա եւ Յունաստան գործակից պաշտպանութիւն մը յանձն առած են Պուլկարիոյ դէմ։

Այս պարագան, արդէն, առաջին իսկ օրէն իրար անցուց Սօֆիան։ Էնկիւրիի պուլկար դեսպանը բացատրութիւն ուզեց։ Ժխտեցին։ Ցալտարիս ու Ըսմէթ հերքեցին։ Բայց, ահա հելլենական թերթ մը, «Էլէֆթէրոս» Անթրոփոս» իր սեպտ. 19ի թիւով եկաւ հաստատեց Սօֆիայի այդ մտահոգութիւնը, գրելով.

— «Թուրքեւհելլէն ուխտին կցուած է յաւելուած մը, որ կ'ապահովէ ընդհանուր գործակցութիւն մը որ եւ է երրորդի դէմ, որ պիտի ուզէր յարձակիլ Յունաստանի կամ Թուրքիոյ վրայ։ Ուխտին նշանակութիւնը շատ մեծ է ոչ միայն անոր համար որ յոյն բնակչութիւնը շատ շուտով պիտի կարենայ ազատօրէն երթեւեկել թրքական հողերուն վրայ, այլ անոր համար որ կ'ապահովուի Պալքաններու համար ամուր խաղաղութիւն մը, եւ ապագային համար վերջնականապէս կը մեկուսացուի ամէն տեսակի

…

…ղանց արտաքին տեսակցութիւնը, եւ, մանաւանդ, Պուլկար զանազան հոսանքի թերթերու վերջերս ըրած արտայայտութիւնները ցոյց կուտան, որ Սօֆիան, իրականին մէջ, ոչ թէ կը

…

Այս պայմաններուն մէջ, ի՞նչ կրնայ տալ Ըսմէթի Սօֆիա այցելութիւնը։

Խօսինք եւ այդ մասին։

Վ. ԻՇԽԱՆԵԱՆ

ՕՐՈՒԱՆ ՇԱՐԺՈՒՄԻՆ ՀԵՏ

## Ի՞ՆՉՊԷՍ ՊԻՏԻ ԼՈՒԾՈՒԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՏԱԳՆԱՊԸ

— • • —

### ԱՆՍՏՈՒԳՈՒԹԻՒՆ ՄԷԿ ԾԱՅՐԷՆ ՄԻՒՍԸ

Քաղաքական աշխարհի արդի տխեգերական դէմքերէն մին Լորտ Սէսիլ հետեւեալ խորհրդածութիւնները գրի առած է Ն. Ֆ. Փրէսի համար.—

Անուրանալի է թէ համաշխարհային …

այդպիսի համաշխարհային ժողովի մը կամ համաշխարհային լուծումներու յաջողութեան համար անհրաժեշտ նախապայմանները պատրաստ չէին տնտեսական շրջանակներուն …

…

…չունենալով իրենց մէջ լուծելի որ եւ է խնդիր, Պուլկարիա եւ Թուրքիա, որոնց աշխարհագրական դիրքն ու փոխադարձ շահերը զիրենք կը մօտեցնեն, որոշած՞ են իրարու հետ համաձայնիլ»։

…

## Ի՞նչու այս մոռացում

— o —

…

եղած ըլլայ միայն, զոր մենք նոյ… խակ իբր առաւելագոյն թիւը կարծեցինք։ Զենք ուզեր չափազանցել։ Մընաց որ, այս հարցը երրորդական է, զոր կարելի է, ի հարկին, ճշդել։

Նոյնպէս, ուրիշ հարց է նաեւ թէ Կէմէրէկին հին անունը «Կամարա՞կ» է թէ «Կարմիրակ»։ Այս խնդիրներով չենք ուզեր «Յառաջ»ի էջերը գրաւել։ Ըսենք միայն որ Պահլաւունիի գաղափարակից ու եռանդուն գործիչ Գ. Պետրոս Ծառուկեանը (Կակաղ վարժապետը՝ իր մականունը) եւ Մանուկ Էֆէնտին (ու ի՜նչ վարժապետներ) կ'ըսէին մեզի՝ աշակերտներուս թէ «Կամարակ» անունը կամարաւոր աւէ… է առնուած։ Պէտք է հոս մատնանշ…

…

# ԱՅԳԻՆԵՐԷՆ ՈՒ ԱՐՏԵՐԷՆ
## Հայրենի Սուր - Սուրբ յուշերէն

— • —

(Բ. եւ վերջին մաս)

— Ա՜հ, Տ… ցաւերս մի նորոգեր… Կը մտնենք մահիճ. երկու եղբօր պէս կողք կողքի կը պառկինք։ Քունը չի տանիր… Դաւիթ կը հազայ ու կողմ կը փոխէ… Դաւիթ օր ու արեւ տեսած մարդ է, 30 տարեկան մը, գիւղին լաւ ու գէշ կողմերը տեսած։

…

որ աքիները (ցանքերը) վերցան, յետոյ կարգաւ ջարդեցին… Այրերը կապեցին իրարու, բանակի նման, առջեւէն մեր տէրտէրը, ետեւէն ալ Սագրաթ գիւղինը, ու գնդակահարելով, Եփրատի արագավազ ալիքներուն յանձնեցին… գիւղը խարապա դարձաւ… Կիները դեռ կ'ապրէին, ապրեցան մինչեւ որ կալերը վերցան…

…

րուն կը բաւէր, բերի հարուածներուն տակ կաթիլ մը ջուր զլացան Զէթ գիւղի եւ մեր գիւղի հաւաքուող կիներուն… պէկերը իրարու ներհակ ինկած, մէկզմէկու «մարապա»ները կը զարնէին նշանառութեամբ, կարծես ծառին վրայ ճնճղուկ որսային… Տալուչէի Կիրակոսը Տէրտրանց կալը լողը վերցուցած տանը, ետեւէն զարկին, զպրոցին պատին տակէն կըրակելով…

«Քէօս Մհօն գիս իր տունը տարաւ… տուն փախայ… Գիւղը ամայի…

…

